Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

50 - ԱՀ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1953

198

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78




# ԼԵՆԻՆԻ ԴՐՈՇՈՎ, ՍՏԱԼԻՆԻ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹՅԱՄԲ՝ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄ

*Սովետական ժողովուրդը և աշխարհի ողջ պրոգրեսիվ մարդկությունը նշում են Վլադիմիր Իլյիչ Լենինի մահվան 29-րդ տարեդարձը։ 1924 թվականի հունվարի 21-ին դադարեց բաբախելուց ամբողջ աշխարհի աշխատավոր մասսաների առաջնորդ ու ուսուցիչ, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիմնադիր ու կերտող, Սովետական պետության ստեղծող ու իմաստուն ղեկավար մեծահանճար Լենինի բոցավառ սիրտը։*

*Վլադիմիր Իլյիչ Լենինի մահը մեծագույն կորուստ էր պարտիայի, բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության համար։ Լենինյան սգո օրերին պարտիայի Կենտրոնական Կոմիտեն մասսաներին ուղղած իր դիմումի մեջ գրել է. «Դեռ երբեք Մարքսից հետո պրոլետարիատի ազատագրական մեծ շարժման պատմությունն առաջ չի քաշել մի այնպիսի հսկա մեծություն, որպիսին է մեր*




52

1186-53

12000

digitised by A.R.A.R.@

հանգուցյալ առաջնորդը, ուսուցիչը, բարեկամը։ Այն ամենը, ինչ պրոլետարիատի մեջ իսկապես մեծ է և հերոսական-անվեհեր միտքը, երկաթե, անընկճելի, համառ, ամեն ինչ հաղթահարող կամքը, սրբազան ատելությունը, մահու չափ ատելությունը ստրկության և ճնշման նկատմամբ, լեռներ շարժող ռևոլյուցիոն կիրքը, մասսաների ստեղծարար ուժի նկատմամբ անսահման հավատը, կազմակերպական վիթխարի հանճարը,— այդ բոլորն իր հիանալի մարմնացումն էր գտել Լենինի մեջ, որի անունը դարձել է նոր աշխարհի սիմվոլը արևմուտքից մինչև արևելք, հարավից մինչև հյուսիս»

Լենինն անմահ է։ Նա իր մերձավորագույն զինակից ընկեր Ստալինի հետ միասին ստեղծեց պատմության մեջ առաջին նոր տիպի պարտիան, որը դարձավ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը։ Լենինը և Ստալինը նախապատրաստեցին ու կազմակերպեցին Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը և գլխավորեցին աշխարհի առաջին բանվորա-գյուղացիական պետությունը։

Ընկեր Ստալինը մեծ Լենինի անմահ գործի հանճարեղ շարունակողն է։ Լենինի մահվան ժամանակ՝ համաժողովրդական սուգ-



թության օրերին ընկեր Ստալինը պարտիայի անունից պատմական երդում տվեց՝ գնալ լենինյան ուղիով և սրբությամբ կատարել մեծ առաջնորդի պատգամները— բարձր պահել և մաքուր պահպանել պարտիայի անդամի վեհ կոչումը, աչքի լույսի պես պահպանել մեր պարտիայի միասնությունը, պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան, բոլոր ուժերով ամրապնդել բանվորների և գյուղացիների դաշինքը, ամրապնդել մեր երկրի ժողովուրդների եղբայրական համագործակցությունը և ամրապնդել ու ընդլայնել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը, ամրապնդել Սովետական Բանակն ու Նավատորմը, ամրապնդել ու ընդլայնել ամբողջ աշխարհի աշխատավորների ինտերնացիոնալ միասնությունը։

Անցած 29 տարիներում սովետական հերոսական ժողովուրդը ընկեր Ստալինի առաջնորդությամբ կենսագործեց մեծ Լենինի պատգամները և մեր երկիրը դարձրեց աշխարհի ամենահզոր պետությունը, քաղաքակրթության ջահակիրը, խաղաղության հուսալի պատվարը։ Սովետական Միությունը լենինիզմի իդեաների կենդանի մարմնացումն է, նրանց մեծագույն տրիումֆը։

Սովետական ժողովուրդը Լենինի—Ստալինի



digitised by A.R.A.R.@

*պարտիայի իմաստուն ղեկավարությամբ ապահովեց մեր երկրի ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական ռևոլյուցիայի հաղթանակը և կառուցելով սոցիալիզմ, անշեղորեն գնում է դեպի կոմունիզմ։ Այդ հաղթական ուղին լուսավորված է լենինիզմի ամենազոր գաղափարներով։*

*Ոգեշնչված Սովետական Միության աննախընթաց հաջողություններով, ժողովրդական դեմոկրատիայի երկրները, կոմունիստական ու բանվորական պարտիաների ղեկավարությամբ, ընթանում են լենինյան ուղիով և կառուցում նոր, ազատ ու երջանիկ կյանք։*

*Լենինիզմը դարձել է կապիտալիստական աշխարհի աշխատավոր մասսաների ազատագրության դրոշը, որի ներքո նրանք վճռական պայքար են մղում կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի հաղթանակի համար։*

*Լենինիզմի դրոշով աճում ու ամրապնդվում է սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության հզոր լագերը։ Մեր դարաշրջանը կապիտալիզմի կործանման ու կոմունիզմի հաղթանակի դարաշրջանն է, ամբողջ աշխարհում լենինիզմի գաղափարների հաղթանակի դարաշրջանը։*





*Մեծ Լենինի մահվան 29-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը նշում է հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած նորանոր հաղթանակների պայմաններում։*

*Մեր երկրի հետագա առաջխաղացման գործում, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար մղվող պայքարում վճռական նշանակություն ունեցավ Լենինի—Ստալինի պարտիայի 19-րդ համագումարը, որը պանծալի էջ է մեր Հայրենիքի և միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ։*

*Համագումարի նախօրյակին լույս տեսավ ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատությունը՝ ստեղծագործական մարքսիզմի կլասիկ երկը, որը հանդիսանում է սոցիալիզմի քաղաքատնտեսության բարձրագույն աստիճանը։*

*Պարտիայի 19-րդ համագումարը ընթացավ ստալինյան ղեկավար դրույթների դրոշի ներքո և նշեց մեր երկրում կոմունիզմի կառուցման կոնկրետ խնդիրները։ Համագումարում ընդունված՝ պարտիայի նոր Կա-*

նադրության մեջ ասված է. «Այժմ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի գլխավոր խնդիրներն են՝ կառուցել կոմունիստական հասարակարգ սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու միջոցով, անընդհատ բարձրացնել հասարակության նյութական և կուլտուրական մակարդակը, հասարակության անդամներին դաստիարակել ինտերնացիոնալիզմի և բոլոր երկրների աշխատավորների հետ եղբայրական կապեր հաստատելու ոգով, ամեն կերպ ամրապնդել Սովետական Հայրենիքի ակտիվ պաշտպանությունը նրա թշնամիների ագրեսիվ գործողություններից»։

Համագումարում պարտիայի Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին տված իր հաշվետու զեկուցման մեջ ընկ. Գ. Մ. Մալենկովը վեր հանեց մեր նվաճումները տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։ Արդյունաբերության արտադրանքի ծավալը արդեն 1951 թվականին նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը գերազանցեց ավելի քան 2 անգամ։ 1946—51 թվականներին վերականգնվել ու կառուցվել են մոտ 7 հազար արդյունաբերական խոշոր ձեռնարկություն։ 1952 թվականին արդյունաբերության հիմ-



նական արտադրական ֆոնդերը, 1940 թվականի համեմատությամբ, աճել են 77 տոկոսով։ Հայրենական մեքենաշինությունը միայն վերջին 3 տարում ստեղծել է մեքենաների և մեխանիզմների մոտ 1.600 նոր տիպեր։ 1949—1951 թվականների երեք տարում չուգունի ձուլման աճը կազմեց 8 միլիոն տոննա, պողպատի ձուլման աճը՝ 13 միլիոն տոննա և գլանվածքի արտադրության աճը՝ 10 միլիոն տոննա, այդ տարիներում ածխի հանույթի աճը կազմեց 74 միլիոն տոննա և նավթի հանույթի աճը՝ 13 միլիոն տոննա։ Գնալով աճում ու ամրապնդվում է գիտության ու արտադրության սերտ կապը։

Արդյունաբերության հաջող վերականգնման և զարգացման շնորհիվ հետպատերազմյան ժամանակաշրջանում ՍՍՌՄ-ում արդյունաբերական արտադրության՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքը գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ Ներկայումս մեկ շնչին երկու անգամ ավելի էլեկտրաէներգիա է ընկնում, քան 1940 թվականին։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում կատարվեց ու գերակատարվեց Ստալինյան 4-րդ հնգամյա պլանը, գերազանցեցինք ժողովրդական տնտեսության զարգացման նա-



digitised by A.R.A.R.@

*խապատերազմյան մակարդակը և հաջողությամբ ձեռնամուխ եղանք կոմունիզմի մեծ կառուցումների շինարարությանը, որոնցից Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը շահագործման հանձնվեց ժամկետից շուտ։*

*Հենվելով Սովետական Միության ձեռք բերած մեծագույն հաջողությունների վրա, պարտիայի 19-րդ համագումարը միահամուռ կերպով հաստատեց ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի դիրեկտիվները, որոնք բխում են ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատության ծրագրային դրույթներից։*

*Հինգերորդ հնգամյակում արդյունաբերության արտադրանքի մակարդակը 1955 թվականին պետք է 1950 թվականի համեմատությամբ աճի 70 տոկոսով, ընդորում արտադրության միջոցների արտադրությունը պետք է աճի 80 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 65 տոկոսով։ Դրանով հնգամյակի վերջում արդյունաբերության արտադրանքի ծավալը նախապատերազմյան մակարդակը կգերազանցի 3 անգամ։ Ղեկավարվելով Լենինի հանճարեղ ցուցումով, որ «Կոմունիզմը՝ սովետական*



*իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան», պարտիայի 19-րդ համագումարը դիրեկտիվ տվեց՝ հնգամյակի ընթացքում էլեկտրակայանների ընդհանուր կարողությունն ավելացնել 2 անգամ, իսկ հիդրոէլեկտրակայաններինը՝ 3 անգամ։ Շահագործման կհանձնվի Կույբիշևի խոշորագույն հիդրոէլեկտրակայանը և կծավալվի Ստալինգրադի ու այլ հզոր հիդրոէլեկտրակայանների շինարարությունը։*

*Աննախընթաց վերելք է ապրում նաև գյուղատնտեսությունը։ Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունը 1952 թվականին նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 5,3 միլիոն հեկտարով։ 1952 թվականին մեր երկիրն ստացավ 8 միլիարդ փութ հաց, և հացահատիկային պրոբլեմը լուծվեց վերջնականապես ու անվերադարձ կերպով։ Զգալիորեն բարձրացել է տեխնիկական, ձիթատու և կերային կուլտուրաների համախառն բերքը։ Մեծ են հաջողությունները նաև անասնաբուծության ասպարեզում։ Սոցիալիստական գյուղատնտեսությունը օրեցօր հագեցվում է բարձր զարգացած տեխնիկայով և դառնում ավելի ու ավելի արդյունավետ։*



digitised by A.R.A.R.@

Նոր հնգամյակով գյուղատնտեսության ասպարեզում նախատեսվում է հացահատիկի համախառն բերքն ավելացնել 40—50 տոկոսով, բամբակի հումքի բերքը՝ 55—65 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 65—70 տոկոսով և այլն։ Պետք է աճի խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ու մթերատվությունը։ Գյուղատնտեսության ասպարեզում այսուհետև ևս գլխավոր խնդիրը մնում է գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացումը, անասունների հանրային գլխաքանակի հետագա ավելացումը՝ նրա մթերատվության միաժամանակյա աճի հետ մեկտեղ։ Բնության վերափոխման ստալինյան պլանի կենսագործումը նոր հեռանկարներ է բացում սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման համար։

Այդ բոլորի շնորհիվ բարձրացել է սովետական հասարակության նյութական ու կուլտուրական կյանքի մակարդակը։ 1940 թվականից մինչև 1951 թվականը ՍՍՌՄ ազգային եկամուտն աճել է 83 տոկոսով։ 1947—1952 թվականների ընթացքում մասսայական սպառման ապրանքների գները իջեցվել են 5 անգամ։ Աճել են բանվորների ու ծառայողների աշխատավարձը և գյուղացիների եկամուտները։



Սովետական պետությունը հսկայական միջոցներ է տրամադրում ժողովրդական լուսավորության ու առողջապահության գործին։ ՍՍՌՄ-ում սովորողների թիվը կազմում է 57 միլիոն մարդ։ Ներկայումս երկրում աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մոտ 5,5 միլիոն մասնագետներ, այսինքն՝ 2,2 անգամ ավելի, քան պատերազմից առաջ։ Բժիշկների թիվն ավելացել է 80 տոկոսով։ ՍՍՌՄ-ում գիտա-հետազոտական ինստիտուտների և այլ հիմնարկների թիվը 1939 թվականին եղած 1.560-ից ավելացել՝ 1952 թվականի սկզբին հասել է 2.900-ի։ 1946—51 թվականներին գիտության համար կատարված պետական ծախսերը կազմեցին 47,2 միլիարդ ռուբլի։ Ծաղկում է սովետական գրականությունն ու արվեստը, որի 2.339 աշխատողներ արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչման։

Սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի աճի պերճախոս վկայությունն է նաև այն, որ մեր երկրում մահացությունը կրճատվել է և միայն վերջին 3 տարում բնակչության աճը կազմեց 9 միլիոն 500 հազար մարդ։

Ստալինյան 5-րդ հնգամյակով ՍՍՌՄ ազ-



digitised by A.R.A.R.@

գային եկամուտը պետք է ավելացվի առնվազն 60 տոկոսով և էլ ավելի կաճի ժողովրդական մասսաների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Նոր հնգամյակը ելնում է ընկեր Ստալինի կողմից հայտնագործված սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքից, որը պահանջում է հասարակության նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարման ապահովում՝ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա սոցիալիստական արտադրության անընդհատ աճման ու կատարելագործման միջոցով։

Սովետական ժողովուրդը՝ Լենինի—Ստալինի պարտիայի գլխավորությամբ հաջողությամբ կատարելով 1951 և 1952 թվականների պլանները, այժմ թևակոխել է հնգամյակի երրորդ տարին և լցված է մեծագույն վճռականությամբ ու աշխատանքային պաթոսով, որպեսզի նոր հնգամյակի պլանը ևս գերակատարի։ Դրա պերճախոս վկայությունն է հանդիսանում 1952 թվականի պլանների ժամկետից շուտ կատարումը ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերի կողմից։ Սովետական մետաղագործները, ածխահատները, նավթագործները, երկաթուղայինները, էներգետիկները և ար-



տադրության այլ ճյուղերի կոլեկտիվները պատվով են կատարում մեծ առաջնորդին տված իրենց խոստումներն ու պարտավորությունները։ 1953 թվականը կլինի կոմունիստական շինարարության մի նոր նշանավոր տարեթիվ։

Սովետական Միության այս վիթխարի հաջողությունները արտացոլում են նրա բոլոր ռեսպուբլիկաների, այդ թվում նաև Սովետական Հայաստանի աննախընթաց վերելքը։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ Սովետական Հայաստանը դարձել է ՍՍՌՄ առաջավոր ռեսպուբլիկաներից մեկը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում նոր ուժով դրսևորվեց արդյունաբերության արագ զարգացումը մեր ռեսպուբլիկայում։ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքը 1952 թվականին նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ աճել է 4,2 անգամ, ընդորում առջևից գնում է ծանր արդյունաբերությունը։ Հաջողությամբ է կատարվել արդյունաբերության զարգացման 1952 թվականի պլանը։ Արդյունաբերական ձեռնարկությունները պատվով են կատարում մեր



digitised by A.R.A.R.@

Հայրենիքի կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները, ուղարկելով տուրբիններ. կոմպրեսորներ, գեներատորներ, էլեկտրասարքավորման արմատուրա, ավտոմեքենաների դետալներ, շինանյութեր և այլն։

Մեծ են նաև գյուղատնտեսության նվաճումները։ Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը աշխատանքային բուռն խանդավառությամբ պայքարում է ռեսպուբլիկան սեփական արտադրության հացով ապահովելու համար։ Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը 1952 թվականին նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 13 տոկոսով, իսկ հացահատիկի համախառն բերքըն ավելացավ գրեթե 2 անգամ։ Ընդարձակվել է բամբակի, ծխախոտի, խաղողի և այլ կուլտուրաների ցանքատարածությունը։ Վերելք է ապրում նաև սոցիալիստական անասնաբուծությունը։ Աճում է ողջ գյուղատնտեսության տեխնիկական զինումը։

Սովետական Հայաստանի էկոնոմիկայի նոր վերելքի համար փայլուն հեռանկարներ է բացում ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանը, որով նախատեսվում է բազմաթիվ նոր գործարանների ու ֆաբրիկաների կառուցում մեր ռեսպուբլիկայում։



Սովետական Հայաստանը դարձել է համատարած գրագիտության երկիր և պատված է տարրական ու միջնակարգ դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների և գիտա-հետազոտական հիմնարկների խիտ ցանցով։ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան հանդիսանում է սովետական գիտական կադրերի պատրաստման դարբնոց։ Բարգավաճում ու ծաղկում է հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Ռեսպուբլիկայի կյանքում խոշորագույն իրադարձություն է Լենինի և Ստալինի երկերի հայերեն հրատարակությունը, որոնք գաղափարապես զինում, դաստիարակում են մեր կադրերին ու մասսաներին։

Երախտապարտ հայ ժողովուրդն այս բոլոր նվաճումների համար պարտական է իր ազատարարներին՝ Լենինին և Ստալինին։

Ինչպես միշտ, այնպես էլ այժմ, սովետական ժողովրդի առաջխաղացման գրավականը Լենինի—Ստալինի փառապանծ պարտիայի իմաստուն ղեկավարությունն է. «Միմիայն մեր պարտիան է, որ գիտե, թե ուր պիտի տանել գործը, և հաջողությամբ առաջ է տանում այն։ Ի՞նչ բանի է պարտական մեր պարտիան իր այս առավելությամբ։ Այն բա-



digitised by A.R.A.R.@

նըն, որ նա մարքսիստական պարտիա է, լենինյան պարտիա։ Նա պարտական է այն բանին, որ իր աշխատանքի մեջ ղեկավարվում է Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքով։ Կասկած չի կարող լինել, որ քանի մենք հավատարիմ ենք մնում այդ ուսմունքին, քանի մենք տիրում ենք այդ կողմնացույցին,— մենք հաջողություններ կունենանք մեր աշխատանքի մեջ»։



Վ. Ի. Լենինը մարդկության պատմության մեջ նոր դարաշրջան բացեց։ Լենինիզմը, որպես իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանի մարքսիզմ, ինտերնացիոնալ ուսմունք է և ունի միջազգային նշանակություն։

Լենինիզմի դրոշի ներքո ստեղծվեցին ժողովրդական դեմոկրատիայի երկրները, որոնք ոգեշնչված Սովետական Միության վիթխարի հաջողություններով ու նրա անշահախնդիր օգնությամբ, այսօր կերտում են իրենց նրջանիկ կյանքը։ Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական երկրները կանգնած են սոցիալիստական շինարարության ուղու վրա և ձեռք են բերել վիթխարի նվաճումներ։ 1952 թվականին ար-



դյունաբերական արտադրանքի ծավալը, նախորդ տարվա համեմատությամբ, Չեխոսլովակիայում աճել է 13 տոկոսով, իսկ 1953 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը 1952 թվականի համեմատությամբ, պետք է ավելանա 18,4 տոկոսով։ Նույնպիսի հաջողություններով են թևակոխել 1953 թվականը Լեհաստանը, Ռումինիան, Հունգարիան, Բուլղարիան, Ալբանիան։

Գնալով ամրապնդվում է Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որը Գերմանիայի Միասնական Սոցիալիստական պարտիայի ղեկավարությամբ հասել է լուրջ հաջողությունների և արդեն ձեռնամուխ է եղել սոցիալիզմի էկոնոմիկայի հիմքի կառուցմանը։ Բնութագրելով այդ վճռական շրջադարձի կարևորագույն նշանակությունը Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի պրեզիդենտ Վիլհելմ Պիկը նոր տարվա առթիվ արտասանած իր ճառում ասաց. «Մենք սկսեցինք Գերմանիայում իրականացնել մեր ժողովրդի մեծ զավակներ Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի գաղափարները»։ Գերմանական ժողովուրդը, հակառակ ամերիկա-անգլո-ֆրանսիական իմպերիալիստների, վճռական պայքար է մղում անկախ, միասնական, դեմոկրատական ու խաղաղասեր Գերմանիայի համար։



1185-53

digitised by A.R.A.R.@

Լենինիզմի դրոշով համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող հաղթանակի հասավ չին մեծ ժողովուրդը։ Իմպերիալիզմի անտանելի լծից ազատագրված Չինաստանում ազգայնացվեց արդյունաբերությունը և անցկացվեց հողային ռեֆորմ։ Չինաստանում արդյունաբերական արտադրանքի ծավալը 1951 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 2 անգամ։ Չին մեծ ժողովուրդը հաջողությամբ ու կարճ ժամկետում ավարտելով ժողովրդական տնտեսության վերականգնումը, այս տարի ձեռնամուխ է լինում առաջին հնգամյա պլանի իրականացմանը, որը նոր հեռանկարներ է բացում ազատ Չինաստանի հետագա վերելքի համար։ Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի հաղթական ուղին լուսավորված է լենինիզմի ամենահաղթ գաղափարներով. «Մենք,— ասում է բազմամիլիոն չին ժողովրդի առաջնորդ Մաո Ցզե-դունը,— երախտապարտ ենք Մարքսին, Էնգելսին, Լենինին և Ստալինին, որոնք մեզ զենք տվեցին։ Այդ զենքը գնդացիր չէ, այլ մարքսիզմ-լենինիզմը... Սովետական Միության Կոմունիստական պարտիան մեր լավագույն ուսուցիչն է, որից մենք պետք է սովորենք»։ Սովետա-չինական հավիտենական բարեկա-



մությունը խաղաղության պաշտպանության հզոր գործոն է Արևելքում ու ամբողջ աշխարհում։

Վիթխարի հաջողությունների է հասել Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Մոնղոլական ժողովուրդը՝ զբաղված խաղաղ ստեղծագործական աշխատանքով, ջանք չի խնայում իր հայրենիքի բարգավաճման համար։ Նա անխախտ բարեկամության մեջ է Սովետական Միության հետ։

Ամերիկյան իմպերիալիզմի դեմ մղվող դաժան պայքարում կոփվում ու ամրապնդվում է Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկան։ Իր լիակատար անկախության համար՝ ֆրանսիական ու ամերիկյան իմպերիալիստների դեմ հաղթական ազատագրական պատերազմ է մղում Վյետնամի դեմոկրատական ռեսպուբլիկան։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները Սովետական Միության գլխավորությամբ կազմում են սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության հզոր լագերը, որն օրեց-օր աճում ու ամրապնդվում է ի հակադրություն իմպերիալիզմի ու ագրեսիայի քայքայվող ու կործանվող լագերի, որի գլուխն է կանգնած միջազգային ժանդարմ ԱՄՆ-ը։



digitised by A.R.A.R.@

* * *

Այն ժամանակ, երբ Սովետական Միությունը և ժողովրդական դեմոկրատիայի երկրները ընթանում են խաղաղ ստեղծագործական աշխատանքի ուղիով և հետևողականորեն պաշտպանում խաղաղության գործը, իմպերիալիզմի լագերը գալարվելով կապիտալիզմի հակասությունների մեջ, փրկություն է որոնում էկոնոմիկայի միլիտարիզացման և ագրեսիվ պատերազմների մեջ։ Այդ լագերի գլուխ է կանգնած ԱՄՆ-ը՝ միջազգային ռեակցիայի օջախը, որի բյուջեի 74 տոկոսը կազմում են ռազմական ծախսերը։

Ընկեր Ստալինը ցույց է տալիս, որ բուրժուազիան ամենուրեք ղեկավարվում է ժամանակակից կապիտալիզմի հիմնական տընտեսական օրենքով, այսինքն առավելագույն շահույթի նորմայով, որը նա ձեռք է բերում սեփական երկրի բնակչության մեծամասնության շահագործման, ուրիշ երկրների կողոպտըման ու ստրկացման և ժողովրդական տնտեսության ռազմականացման ու ագրեսիվ պատերազմների միջոցով։

Կապիտալիստական երկրներում անշեղորեն իջնում է աշխատավոր մասսաների կեն-



սամակարդակը։ Միայն Տրումենի պրեզիդենտության տարիներին ավելի շատ հարկեր են հավաքվել, քան ԱՄՆ-ի նախորդ բոլոր պրեզիդենտների ժամանակ։ Նրա օրինավոր հաջորդն է տխրահռչակ Էյզենհաուերը՝ ամերիկյան մոնոպոլիստների սպասարկուն։ Ժամանակակից Ամերիկան դարձել է բանտերի ու հանցագործությունների երկիր։ Այնտեղ ամեն մի 18 վայրկյանում տեղի է ունենում մի հանցագործություն և ամեն մի 45 րոպեյում՝ մի սպանություն։ Հատկապես ծանր է նեգրերի դրությունը, որոնք գազանաբար լինչահարվում են։

Անտանելի է աշխատավոր մասսաների դրությունը նաև ԱՄՆ-ի վասսալ պետություններում։ Անգլիայում մինչև այժմ էլ գոյություն ունի քարտային սիստեմ։ Ֆրանսիայում և Իտալիայում բանվորների ռեալ աշխատավարձը նախապատերազմյանի կեսից էլ պակաս է։ Գնալով աճում է գործազուրկների բանակը։ ԱՄՆ-ում կան 13 միլիոն գործազուրկ և կիսագործազուրկ, Ճապոնիայում՝ 10 միլիոն, Արևմտյան Գերմանիայում՝ 3 միլիոն և այլն։ Խորանում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը։

Այդ բոլորի հետևանքով աճում է աշխատավոր մասսաների զայրույթն ու պայքարը իմ-



digitised by A.R.A.R.@

պերիալիզմի դեմ։ Այժմ գործադուլային հըզոր շարժումներ են ծավալվում ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում, Արևմտյան Գերմանիայում, Իտալիայում և բուրժուական այլ երկրներում։ Կապիտալիստական աշխարհի գաղութային սիստեմը ապրում է խորը ճըգնաժամ։ Ազգային-ազատագրական շարժումները լայն թափ են ստացել Վյետնամում, Բիրմայում, Մալայայում, Ֆիլիպիններում, Ինդոնեզիայում, Հնդկաստանում, Աֆրիկայի երկրներում և այլն։ Հերոսական պայքար է մղում կորեական խաղաղասեր ժողովուրդը։

Ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է մարդկությանը նետել նոր, երրորդ համաշխարհային պատերազմի սպանդանոցը։ Բայց խաղաղության և դեմոկրատիայի լագերի ուժերն ավելի հզոր են և կարող են զսպաշապիկ հագցնել պատերազմի հրձիգներին։ Այդ լագերը Սովետական Միության գլխավորությամբ հետևողականորեն կիրառում է խաղաղասիրական և ժողովուրդների համագործակցության քաղաքականություն։ Դրա մի նոր վառ արտահայտությունն են ընկեր Ստալինի պատասխանները «Նյու-Յորք Թայմըս»-ի դիվանագիտական թղթակցին, որոնց մեջ խաղաղության մեծ դրոշակակիրը պատերազմը ԱՄՆ-ի և ՍՍՌՄ-ի միջև անխու-



սափելի չի համարում և հայտնում է սովետական կառավարության պատրաստակամությունը՝ միջազգային դրությունը բարդացնող հարցերը լուծելու խաղաղ ճանապարհով, բոլոր միջոցները ձեռք առնել Կորեայում պատերազմը լիկվիդացնելու համար։

Խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարի ավանգարդում են բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները։ Նրանց համար մարտական ծրագիր է ընկեր Ստալինի պատմական ճառը պարտիայի 19-րդ համագումարի եզրափակիչ նիստում։ Ընկեր Ստալինը ցույց տվեց, որ բուրժուազիան դեն է նետել բուրժուա-դեմոկրատական ազատությունների և ազգային անկախության ու սուվերենության դրոշները. «Այժմ բուրժուազիան դոլարով վաճառում է ազգի իրավունքներն ու անկախությունը»։ Այդ դրոշները պետք է բարձրացնեն կոմունիստական ու դեմոկրատական պարտիաները, իրենց շուրջը համախմբեն ժողովրդական լայն մասսաներին և կազմակերպեն վճռական գրոհ իմպերիալիզմի դեմ. «Պատերազմների անխուսափելիությունը վերացնելու համար հարկավոր է ոչնչացնել իմպերիալիզմը»։ Եղբայրական կոմպարտիաների հաղթանակի գրավական



digitised by A.R.A.R.@

է հանդիսանում աջ սոցիալիստների սիստեմատիկ մերկացումն ու ջախջախումը, որովհետև, ինչպես ընկ. Գ. Մ. Մալենկովը նշեց պարտիայի 19-րդ համագումարում. «Ժամանակակից աջ սոցիալ-դեմոկրատիան, ի լրացումն ազգային բուրժուազիայի սպասավորների իր հին դերի, դարձել է օտարերկրյա՝ ամերիկյան իմպերիալիզմի գործակալը և նրա ամենակեղտոտ հանձնարարությունններն է կատարում պատերազմի նախապատրաստման գործում ու իրենց ժողովուրդների դեմ մղվող պայքարում»։

Ապրում, գործում ու հաղթանակում է լենինիզմը։

Լենինիզմի իդեաները ապրում ու հաղթանակում են մեր փառապանծ պարտիայի, սովետական մարդկանց, կոմունիզմի ակտիվ կառուցողների հերոսական սխրագործություններում, ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական պարտիաների, բանվորների ու գյուղացիների անխոնջ աշխատանքում՝ հանուն իրենց նոր, ազատ ու երջանիկ կյանքի, կապիտալիստական երկրների եղբայրական պարտիաների ու աշխատավոր մասսաների վճռական պայքարում՝ հանուն կապիտալիզմի կործանման ու սոցիալիզմի հաղթանակի, աշխարհի ողջ պրո-



գրեսիվ մարդկության վճռական պայքարում՝ հանուն լուսավոր ու շողշողուն ապագայի— կոմունիզմի վերջնական հաղթանակի ամբողջ աշխարհում։

Աշխարհի պրոգրեսիվ մարդկության առաջխաղացման համար մեծագույն ուղենիշ են ընկեր Ստալինի հանճարեղ խոսքերը մեծ Լենինի մասին.

«Հիշեցեք, սիրեցեք, ուսումնասիրեցեք, Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին։

Իլյիչի պես պայքարեցեք և հաղթեցեք ներքին ու արտաքին թշնամիներին։

Իլյիչի պես կառուցեք նոր կյանք, նոր կենցաղ, նոր կուլտուրա։

Երբեք մի հրաժարվեք աշխատանքի մեջ փոքրից, որովհետև փոքրից է կառուցվում մեծը,— այս է Իլյիչի կարևոր պատգամներից մեկը»։

Լենինի դրոշով, ընկեր Ստալինի առաջնորդությամբ սովետական ժողովուրդը հաղթանակորեն գնում է դեպի կոմունիզմ։

Դոցենտ՝ Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

digitised by A.R.A.R.@

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով՝ աշխատավորների դեպուտատների օկրուգային, շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունները տեղի են ունենալու 1953 թվականի մարտի 1-ին, կիրակի օրը։*

*Մեր երկրում ընտրությունները անցնում են բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի քաղաքական ու արտադրական հսկայական վերելքի իրադրության մեջ։ Սովետական ժողովուրդը Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ պայքարում է նոր հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումները կենսագործելու համար։*

*Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները նախա-*



*պատրաստելու և հաջողությամբ անցկացնելու գործում վճռական նշանակություն ունի ագիտացիոն-մասսայական աշխատանքի կազմակերպումը բնակչության մեջ։*

*Ընտրություններին նախապատրաստվելու առաջին էտապում հիմնական ուշադրությունը պետք է դարձվի ընտրողների մեջ տարվելիք մասսայական-քաղաքական աշխատանքի լայն ծավալմանը։ Ագիտատորները և պրոպագանդիստները պետք է ընտրողներին պարզաբանեն ՍՍՌՄ Կոնստիտուցիայի մեծ սկզբունքները, քաղաքացիների այն իրավունքներն ու պարտականությունները, որոնք բխում են հիմնական օրենքից, աշխարհում ամենաառաջավոր սովետական, իսկական ժողովրդական դեմոկրատիայի առավելությունները և բուրժուական դեմոկրատիայի նկատմամբ նրա գերազանցությունը, սովետական պետության ընտրական սիստեմը, ընտրողների մեջ լայնորեն մասսայականացնեն ընկեր Ստալինի ճառը և ՍՄԿՊ 19-րդ համագումարի նյութերը։*

*Կոմունիստական շինարարության նվաճումներն ու հաջողությունները լայնորեն պարզաբանելու հետ միասին, ագիտատորներն ու պրոպագանդիստները իրենց գործունեության ընթացքում պետք է պատմեն*



digitised by A.R.A.R.@

յուրաքանչյուր առանձին օկրուգի, շրջանի, քաղաքի, գյուղի սոցիալիստական վերափոխման գործում ձեռք բերված կոնկրետ նվաճումների մասին և այն խնդիրների մասին, որ նրանք պետք է լուծեն նոր հնգամյակում։

Ընտրական կամպանիայի ընթացքում կարևոր նշանակություն ունի Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների օկրուգային, շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների Կանոնադրության լայն ուսումնասիրումը ընտրողների կողմից։ Ագիտատորների և պրոպագանդիստների խնդիրն է՝ ընտրողներին խոր կերպով պարզաբանել առաջիկա ընտրական կամպանիայի քաղաքական նշանակությունն ու առանձնահատկությունը, ընտրական օկրուգներ և ընտրական տեղամասեր կազմակերպելու կարգը, ընտրողների ցուցակների կազմումը, ընտրական հանձնաժողովների ստեղծման ու հաստատման և դեպուտատության թեկնածուների առաջադրման ու գրանցման կարգը։

Այս տարի մեր ռեսպուբլիկայում առաջին անգամ տեղի են ունենալու աշխատավորների դեպուտատների օկրուգային Սովետների ընտրությունները։ Ընտրողները մեկ ընտրական տեղամասում միաժամանակ քվեարկելու



են գյուղական, շրջանային, քաղաքային և օկրուգային Սովետների դեպուտատներին, յուրաքանչյուր ընտրող՝ դրան համապատասխան, ստանալու է մի քանի ընտրական բյուլետեն։ Ուստի, բացատրական աշխատանքի ընթացքում պետք է հասնել այնպիսի դրության, որպեսզի յուրաքանչյուր ընտրող պարզ ու հստակ պատկերացնի քվեարկության կարգը։

Անցյալ ընտրությունների ժամանակ կատարված քաղաքական աշխատանքի փորձը ցույց տվեց, որ ընտրողների մեջ կատարվող ամբողջ կազմակերպական-մասսայական աշխատանքի կենտրոնը հանդիսանում է ընտրական տեղամասը։

Ընտրական տեղամասում կատարվող ագիտացիոն աշխատանքի հաջողությունը մեծ չափով կախված է ագիտատորների ճիշտ տեղաբաշխումից։ Որպեսզի ագիտատորը կարողանա ճանաչել մարդկանց, ճիշտ մոտենալ նրանց, կոնկրետ ու ավելի գյուրըմբռնելի դարձնել իր ագիտացիան՝ խորհուրդ է տրվում ամբողջ ընտրական կամպանիայի ընթացքում յուրաքանչյուր ագիտատորի ամրացնել ընտրողների մի որոշ խումբ։

Պարտիական կազմակերպությունների մեծամասնությունը ճիշտ է մոտեցել ագիտա-



digitised by A.R.A.R.@

տորների և պրոպագանդիստների ընտրության ու տեղաբաշխման գործին։ Արտաշատի շրջանում ընտրողների մեջ բացատրական աշխատանք են կատարում 780 ագիտատորներ. այստեղ որպես ագիտատորներ ընդգրկվել են գյուղական ինտելիգենցիայի լայն խավերը՝ ուսուցիչներ, բժիշկներ, գյուղատնտեսներ և այլն։

Աշտարակի շրջանում ընտրողների մեջ բացատրական-մասսայական աշխատանք կատարող ագիտատորների թվումն են՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Գ. Ստեփանյանը, կոլտնտեսության ուուատնտես Ա. Մանուկյանը, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, վաստակավոր ուսուցչուհի Ռ. Անդրիասյանը և ուրիշներ։

Ընտրական տեղամասում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը կազմակերպելիս պարտիական կազմակերպությունները պետք է հաշվի առնեն բնակչության տարբեր խմբերի առանձնահատկությունները, նրանց քաղաքական ու կուլտուրական մակարդակը։ Մեծ ուշադրություն պետք է դարձնել ընտրություններին առաջին անգամ մասնակցող երիտասարդ ընտրողների վրա։ Նրանց հետ կազմակերպվող զրույցների ընթացքում պետք է պատմել, թե ինչ տվեց սո-



վետական իշխանությունը երիտասարդությանը։ Անհրաժեշտ է երիտասարդությանը պարզաբանել, որ միայն Սովետական երկրում են ստեղծված ազատ աշխատանքի, կրթության և կուլտուրական զարգացման բոլոր պայմանները։ Պետք է գումարել ընտրություններին առաջին անգամ մասնակցող ընտրողների հավաքներ, որտեղ հրավիրել հասակավոր բանվորներին և կոլտնտեսականներին, որոնք կարող են պատմել այն մասին, թե ինչպես էին կատարվում ընտրությունները հնում, նախքան ռևոլյուցիան։

Ճիշտ են վարվել Աշտարակի շրջանի Օշականի և Ոսկեվազի կոլտնտեսությունների պարտկազմակերպությունները, որոնք ընտրություններին առաջին անգամ մասնակցող երիտասարդների համար հատուկ զրույցներ են կազմակերպել ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիաների, աշխատավորների դեպուտատների օկրուգային, շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունների Կանոնադրության մասին։

Բաղրամյան գյուղի պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը բաղկացած է 36 հոգուց, որոնցից յուրաքանչյուրը ամրացված է ընտրողների մի որոշակի խմբի։ Ագիտատորներ Գ. Ողիազարյանը, Ա. Աստ-



digitised by A.R.A.R.@

տըրյանը, Գ. Մկրտչյանը և ուրիշներ կանոնավոր կերպով զրույցներ են անցկացնում ընտրողների հետ, նրանց ծանոթացնում են աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների Կանոնադրության հետ և վառ օրինակներով ու փաստերով ցույց են տալիս սովետական դեմոկրատիայի գերազանցությունը բուրժուական կեղծ դեմոկրատիայի հանդեպ։ Ագիտկոլեկտիվի ղեկավար, պարտկազմակերպության քարտուղար ընկ. Տ. Պետրոսյանը մշտապես հրահանգավորում է ագիտատորներին, պարզաբանելով առաջիկա զրույցի թեման։

Հատուկ ուշադրություն պետք է դարձնել կին ընտրողների մեջ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքին, նրանց համար սիստեմատիկ կերպով զեկուցումներ ու զրույցներ կազմակերպել քաղաքական և գիտա-լուսավորական թեմաների շուրջը։ Անհրաժեշտ է կին ընտրողներին պատմել Սովետական Կոնստիտուցիայով կանանց տրված իրավունքների մասին, ՍՍՌՄ ընտրական սիստեմի մասին, բանվորուհիների և կոլտնտեսուհիների նյութական դրության բարելավման ուղղությամբ սովետական պետության ձեռնարկած միջոցառումների մասին, մայր կանանց նկատմամբ պար-



տիայի և կառավարության կողմից ցուցաբերվող հոգատարության մասին և այլն։

Ընտրական կամպանիայի ընթացքում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքում մեծ դեր է կոչված կատարելու դիտողական և տպագիր ագիտացիան։ Ագիտպունկտերում և ակումբներում խորհուրդ է տրվում կազմակերպել ցուցահանդեսներ, որտեղ պետք է դրված լինի Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի տեքստը, քաղվածքներ բերվեն Լենինի և Ստալինի ասույթներից և Սովետական Կոնստիտուցիայից՝ սովետական սոցիալիստական հասարակարգի մասին, սովետական դեմոկրատիայի մասին, դեպուտատի պարտականությունների մասին, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության մասին, Կոմունիստական պարտիայի ղեկավար դերի մասին։ Օգտագործելով ընտրողների ակտիվին՝ ագիտպունկտերում և ակումբներում կանոնավոր կերպով պետք է լույս ընծայել պատի թերթեր, ագիտ-թերթիկներ։

Ընտրական տեղամասերում տարվող ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքում ամենակարևոր տեղ է գրավելու դեպուտատության թեկնածուների օգտին մղվող ագիտացիան։ Դեպուտատության թ-



digitised by A.R.A.R.@

առաջադրված թեկնածուները օկրուգային ընտրական հանձնաժողովների կողմից գրանցվելուց հետո՝ ագիտատորների հիմնական խնդիրն է ագիտացիա մղել թեկնածուների օգտին։ Անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր ընտրող դեռ նախքան ընտրությունը հնարավորություն ունենա ծանոթանալու առաջադրված թեկնածուներին, նրանց կենսագրությանը, հասարակական-քաղաքական և աշխատանքային գործունեությանը։ Դրա համար պետք է կազմակերպել ժողովներ ու միտինգներ՝ ընտրողների և թեկնածուների հանդիպումներ, բնակչության մեջ անցկացնել դեպուտատության թեկնածուների վերաբերյալ զրույցներ և այլն։ Դեպուտատության թեկնածուների օգտին ագիտացիա մղելու համար ագիտատորները կարող են լայնորեն օգտագործել նաև տեղական մամուլը՝ պատի թերթերը, բազմատիրաժ թերթերը, թեկնածուների նկարներով ու կենսագրություններով թերթիկներ ու պլակատներ։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները՝ աշխատավորների ժողովներ ու միտինգներ, քաղաքական զեկուցումներ, դասախոսություններ, զրույցներ, մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքի այն ամենահարուստ փոր-



ձը, որ կուտակել են պարտիական կազմակերպությունները, պետք է օգտագործեն ագիտատորները և պրոպագանդիստները աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրական կամպանիայի ընթացքում։

Ընտրական կամպանիայի հաջողությունը մեծ մասամբ կախված է քաղաքական ագիտացիայի որակից։ Ագիտատորների և պրոպագանդիստների խնդիրն է՝ հմտորեն կազմակերպել բնակչության մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը, հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր ընտրող մասնակցի քվեարկությանը և որպեսզի ռեսպուբլիկայի աշխատավորների դեպուտատների տեղական Սովետներում ընտրվեն սովետական ժողովրդի լավագույն ներկայացուցիչները, Լենինի—Ստալինի պարտիայի գործին անհունորեն նվիրված իսկական հայրենասերները։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի որոշումները, մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի պատմական ճառը և «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատությունը հանդիսանում են քաղաքական, տնտեսական ու կուլտուրական հետագա վերելքի փայլուն ծրագրեր։

Ընկեր Ստալինի հանճարեղ աշխատության գաղափարներով են թափանցված հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները, որոնց մեջ հատուկ ուշադրություն է նվիրված սոցիալիստական գյուղատնտեսության վերելքին, որպես մեր Հայրենիքի հզորության և սովետական ժողովրդի նյութական բարեկեցության աճման գլխավոր միջոցառումներից մեկը։

Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարում ընկ. Մալենկովը նշեց, որ



ժողովրդական տնտեսության շահերը և սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման խնդիրները պահանջում են էլ ավելի մեծ չափով ավելացնել գյուղատնտեսական ապրանքների արտադրությունը»։

Գյուղատնտեսական արտադրանքների արտադրության ավելացման գործում ամենակարևոր գործոններից մեկը հանդիսանում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացումը։ Այդ կապակցությամբ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում նշված են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման կոնկրետ առաջադրանքները՝ ելնելով առանձին ռեսպուբլիկաների, շրջանների կոնկրետ պայմաններից և կոլտնտեսությունների ու ՄՏ կայանների աշխատանքի հաջող փորձի արդյունքներից։ Այսպես, օրինակ, դիրեկտիվների մեջ նշված է, որ Անդրկովկասյան շրջաններում հացահատիկի բերքատվությունը նոր հնգամյակում պետք է հասցնել անջրդի հողերում 20—22 ցենտների, ջրովի հողերում՝ 30—34 ցենտների, բամբակի բերքատվությունը՝ 25—27 ցենտների, կարտոֆիլինը՝ 135—155 ցենտների և այլն։

Առաջավոր կոլտնտեսությունների բերքա-



digitised by A.R.A.R.@

տվության ցուցանիշները վկայում են, որ մեր ունեցած հնարավորությունները թույլ են տալիս ոչ միայն կատարելու, այլև գերակատարելու բերքատվության բարձրացման առաջադրանքները։ Բերքատվության բարձրացման գործում կարևորն այն է, որպեսզի արտադրության մեջ արմատավորվեն գիտության նվաճումները և բարձր բերքի առաջավոր տնտեսությունների փորձը։

Հնգամյա պլանի դիրեկտիվների մեջ նշված է, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման կարևոր միջոցներից մեկը համարվում է ճիշտ ցանքաշրջանառության արմատավորումը՝ տնտեսություններում բազմամյա խոտաբույսերի ցանքի հետ միասին։

Գիտահետազոտական աշխատանքների և առաջավոր կոլտնտեսությունների փորձերը համոզիչ կերպով ապացուցել են, որ ճիշտ ցանքաշրջանառության իրացումը՝ խոտադանության, ագրոտեխնիկական միջոցառումների սիստեմի հետևողական կիրառմամբ, կազմակերպական և արտադրական մի շարք առավելություններից բացի լավագույն միջոցն է հողի բերրիությունը բարձրացնելու և մշակվող կուլտուրաների բարձր ու կայուն բերք ստանալու համար։ Ախտայի շրջանի



Ցանտան գյուղի Գր. Հարությունյանի անվան կոլտնտեսությունում 1146 հեկտար վարելահողերի վրա կիրառելով խոտադաշտային ցանքաշրջանառություն, հացահատիկի բերքատվությունը տարեցտարի բարձրացվում է. օրինակ՝ ցանքաշրջանառության կիրառման առաջին տարվա հետ համեմատած հացահատիկի բերքատվությունը 5-րդ տարում աճել է 33 տոկոսով, 6-րդ տարում՝ 64,5 տոկոսով, 7-րդ տարում՝ 95 տոկոսով։ Բացի հացահատիկի բերքատվության բարձրացումից, ցանքաշրջանառության միջոցով կոլտնտեսությունը կերի ամուր բազա է ստեղծել անասունների գլխաքանակն ավելացնելու և նրանց մթերատվությունը բարձրացնելու համար. օրինակ՝ կոլտնտեսությունը եթե ցանքաշրջանառության կիրառման նախօրյակին ուներ 25 հեկտար կորնգանի հնձվող տարածություն, ապա ցանքաշրջանառության իրացումից հետո այդ տարածությունը հասավ 250 հեկտարի։ Այդպիսի կոլտնտեսություններ մեր ռեսպուբլիկայում բազմաթիվ են։

Պարտիայի 19-րդ համագումարում ընկ. Մալենկովը նշեց, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման համար անհրաժեշտ է բարելավել դաշ-



digitised by A.R.A.R.@

տային աշխատանքների որակը և կրճատել դրանց կատարման ժամկետները։ Այդ տեսակետից կարևոր նշանակություն է ստանում հացահատիկային կուլտուրաների ցանքսի ավարտումը սեղմ ու վաղ ժամկետում։

Ուշ ցանքի բերքատվությունը ցածր է, որը հետևանք է այն բանի, որ ամռան ամիսներին մթնոլորտային տեղումների համարյա բացակայության, հարավից փչող հարատև տաք քամիների և օդի ցածր հարաբերական խոնավության հետևանքով բույսերի արմատաբնակ ջրի փոքր պաշար է կուտակվում, որով դաժան պայմաններ են ստեղծվում հացահատիկի անջրդի ցանքերի աճման և զարգացման համար, առանձնապես նրանց կյանքի ամենավճռական՝ կաթնային-մոմային հասունացման շրջանի սկզբում։

Այստեղից արդեն պարզ է դառնում, որ հնգամյա պլանի դիրեկտիվների համաձայն, եթե գյուղատնտեսական կուլտուրաների ցանքը կատարենք վաղ և սեղմ ժամկետում, դրանով մենք կապահովենք և կկրկնապատկենք նաև առաջադրված բերքատվության ցուցանիշները։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում կարևոր



նշանակություն ունեն ցրտահերկի ու վաղ ցելի աշխատանքների որակը և նրանց կատարման ժամկետների կրճատումը։ Գործնականում ապացուցված է, որ վաղ ժամկետում կատարված ցրտահերկի և ցելի շնորհիվ հողում ծծվում են տեղացած անձրևները, որոնք արագացնում են հողում կատարվող քիմիական ու բիոլոգիական պրոցեսները, նպաստում դժվարալույծ սննդանյութերը տարալուծ դարձնելուն։ Հողի խոր շերտի տակ են անցնում և ոչնչացվում մոլախոտերի ծիլերը, վնասատուների սաղմերը և այլն։ Վարի խորությունը որոշում է նրա որակը։ Դիտողությունները ցույց են տալիս, որ ավելի խորը կատարած ցրտահերկը, վաղ ցելը և ընդհանրապես խոր հերկը ավելի շատ խոնավություն է պահպանում իր մեջ, ավելի լավ է բարելավում հողի ներքին շերտի կազմությունը, հետևապես և բերքատվությունը ավելի բարձր է լինում։ Հերկը պետք է կատարել նախախոփիկով ունեցող գութանով, որի միջոցով դաշտի երեսի փոշիացած, անստրուկտուր, էմալակալած շերտը կտրվում, գցվում է ակոսի տակը և, ընդհակառակը, վեր է հանվում ստրուկտուրա ունեցող ստորին բերրի հողաշերտը։ Այս ամենը ցույց են տալիս վաղ ժամկետում և որակով կատա-

թած հերկի առավելությունները, նրա նշանակությունը բերքատվության բարձրացման գործում։

Բացի ագրոտեխնիկական նշանակությունից, ցրտահերկը ունի նաև կազմակերպչական մեծ նշանակություն։ Այն կոլտնտեսությունը, որ աշնանը լրիվ կատարում է ցրտահերկի պլանը՝ հնարավորություն է ստանում թեթևացնելու գարնան դաշտային աշխատանքները։

Հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում հատուկ ուշադրություն է նվիրվում պարարտացման գործին։ Մեր կոլտնտեսությունները իրենց փորձի արդյունքներից լավ գիտեն, թե որքան մեծ է պարարտացման նշանակությունը բերքատվության բարձրացման համար։ Գյուղատնտեսության աշխատողների առաջնահերթ խնդիրն է՝ բոլոր միջոցները ձեռք առնել ավելի շատ կուտակելու և օգտագործելու տեղական պարարտանյութեր՝ գոմաղբը, մոխիրը և այլն։ Պետք է լայն չափով կիրառել կանաչ և բակտերիոլոգիական պարարտացումը։

Հանքային պարարտանյութերը նոր հնգամյակում աճելու են կրկնակի չափով։ Դրա համար գյուղատնտեսության բոլոր աշ-



խատողների առաջ խնդիր է դրվում՝ ավելի արդյունավետ օգտագործելու օրավուր աճող հանքային պարարտանյութերը, անկորուստ պահպանել և ժամանակին ու արդյունավետ օգտագործել ստացվող պարարտանյութերը։ Կարևոր է կոմբինացված պարարտանյութերի օգտագործումը. հանքային և տեղական պարարտանյութերի կոմբինացված պարարտացումով անհամեմատ ավելի բարձր բերք է ստացվում։

Տարիների փորձը ցույց է տվել, որ բարձր բերք ապահովելու համար, բացի հողի բերրիությունից, նրա ագրոկուլտուր մշակությունից, պետք է ունենալ նաև լավորակ սերմացու, այն է՝ հացահատիկի սերմացուն պետք է ունենա ծանր քաշ, սննդամթերքի մեծ պաշար, առողջ սաղմ, բարձր ծլունակություն և ծլման մեծ էներգիա։

Խոշոր նշանակություն ունի նաև սերմի պահպանումը։ Սերմացուի պահպանման համար վճռական նշանակություն ունի սերմի խոնավությունը։ Նրա խոնավությունը 15 տոկոսից բարձր չպետք է լինի։ Սերմացուի պահպանման գործում կարևոր նշանակություն ունի նրա պահեստավորումը։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային մասսաները և ամբողջ սովետական ժողովուրդը



digitised by A.R.A.R.@

*ոգեշնչված Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի որոշումներով, սոցիալիստական մրցություն են ծավալում նոր հնգամյակի դիրեկտիվները անշեղորեն կենսագործելու համար։ Հոկտեմբերյանի, Արտաշատի, Ախուրյանի, Նոր Բայազետի, Սիսիանի շրջանների աշխատավորները պարտիայի 19-րդ համագումարի որոշումները քննարկելուց հետո գործնական աշխատանքի անցան ցրտահերկը բարձրորակ կատարելու, սերմացուները զտելու, պահպանելու, պարարտանյութերը փոխադրելու, դաշտերը քարերից մաքրելու, ձյունակուտակման աշխատանքները կազմակերպելու, անասունների հաջող ձմեռումը ապահովելու համար։*

*Պարտիական և սովետական կազմակերպությունների խնդիրն է՝ գլխավորել մասսաների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը և լրիվին մոբիլիզացնել նրանց ուժերը բերքատվության բարձրացման միջոցառումները վճռական թափով առաջ մղելու համար։*

*Ա. ՔՈՉԱՐՅԱՆ*

ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության Ցանքաշրջանառության վարչության գլխավոր ագրոնոմ

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԱՐՏԱՍԱՆԱԾ ՃԱՌԸ ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՄԵԾ ԾՐԱԳԻՐ Է

*1. ՍՄԿՊ դերը միջազգային ռևոլյուցիոն շարժման մեջ՝ որպես «Հարվածային բրիգադայի»։*

*2. ՍՄԿՊ շահերը միաձուլվում են խաղաղասեր ժողովուրդների շահերին։*

*3. Ընկեր Ստալինը եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաների խնդիրների մասին, իշխանության համար նրանց մղած պայքարի հաջողությունների և հաղթանակի հեռանկարների մասին։*

*4. Ի. Վ. Ստալինի ճառը 19-րդ համագումարում մոբիլիզացնում է ժողովուրդների բոլոր ուժերը խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող պայքարում։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Ճառ պարտիայի 19-րդ համագումարում։ *Հայպետհրատ, 1952 թ.։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.։*

«Պայքարի ու հաղթանակների մեծ ծրագիրը»: *«Պրավդա»-ի հոկտեմբերի 16-ի առաջնորդողը տպագրված «Ս. Հ.»-ի 1952 թ., հոկտեմբերի 17-ի համարում։*

## II

## ՄԱՐՏԻ 1-Ը ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՐՆ Է

*1. Աշխատավորների դեպուտատների Սովետները՝ հանդիսանում են ՍՍՌՄ-ի քաղաքական հիմքը։*

*2. Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններին մասնակցելը հանդիսանում է բոլոր աշխատավորների ազնիվ գործը։*

*3. Ինքնաքննադատության և ներքևից եկող քննադատության լայնորեն ծավալումը, մասսաների կողմից սովետական օրգանների գործունեության հսկողության ուժեղացումը՝ հանդիսանում է աշխատավորների դեպուտատների Սովետների աշխատանքների բարելավման կարևորագույն պայմանը։*

*4. Աշխատավորների դեպուտատների տեղական Սո-*



*վետների ընտրությունների նախապատրաստումը նշանավորենք կոմունիստական շինարարության բնագավառում նորանոր հաջողություններով։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում: *Հայպետհրատ (1950 թ.)։*

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիան *(Հիմնական Օրենքը)։*

## III

## ԳԱՐՆԱՆ ԴԱՇՏԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՀԱՄԱՐ ՄԵՔԵՆԱ-ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ՊԱՐԿԻ ԳԵՐԱԶԱՆՑ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ՝ ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ Է ՄԵԽԱՆԻԶԱՏՈՐՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐԸ

*1. Գարնան դաշտային աշխատանքների համար մեքենա-տրակտորային պարկի ժամանակին և բարձրորակ նախապատրաստումը 1953 թվականի բարձր բերքի ապահովման կարևոր պայմաններից մեկն է։*

*2. Մեքենաների վերանորոգման ամենօրյա գրաֆիկի կատարումն ու գերակատարումը մեքենա-տրակտորային պարկը ժամանակին նախապատրաստելու գրավականն է։*



digitised by A.R.A.R.@

*3. Հումքի, էլեկտրաէներգիայի, վառելիքի խնայողությունը և առաջավոր մեթոդների գործադրումը՝ գյուղատնտեսական մեքենաների վերանորոգման ինքնարժեքի իջեցման կարևոր միջոցն են։*

*4. Լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների վերանորոգումը ժամանակին և բարձր որակով կատարելու համար։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ — Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.։*

Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—55 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ: *Հայպետհրատ, 1952 թ.։*

Բարձրացնել պետական կարգապահությունը մեքենա-տրակտորային կայաններում: *«Ս. Հ.»-ի 1953 թվականի հունվարի 13-ի առաջնորդողը։*


---


Խմբագրի տեղակալ՝ Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՖ 00072 Պատվեր № 39 Տիրաժ 9060*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան։*